## ՖՐԱՆՍԱՅԻ ՀԱՄԱՅՆԱՎԱՐՆԵՐՈՒ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎԸ

### «Պէտք չէ տարուիլ աղանդաւորութեամբ»

Ուրբաթ օր բացուեցաւ Ֆրանսայի Համայնավար կուսակցութեան արտակարգ խորհրդաժողովը, Հիւկենսի ընդարձակ սրահին մէջ, որուն ճակատը կ'երեւային հետեւեալ վերտառութիւնները.—

— «Միութիւն ֆրանսական ազգի,— 200 ընտանիքներու դէմ... մեր նպատակը՝ իրականացնել ժողովրդական համախմբումի ծրագիրը... Հաց, ազատութիւն, խաղաղութիւն»:

Ժողովին բացումէն անմիջապէս վերջը, շատ կարեւոր զեկոյց մը կարդաց Պ. Մորիս Թորէզ, կուսակցութեան ընդհ. քարտուղարը, օրուան կացութեան եւ իրենց առաջադրութեանց մասին: Գոհունակութիւն յայտնելով կատարուած փոփոխութեան, ընկերվարականներու եւ արհեստակցական միութեան հետ հաստատուած գործակցութեան մասին, չեշտեց թէ համայնավարներու թիւը մեծապէս աւելցած է երեսփոխանական ընտրութիւններէն ի վեր: Անցնելով գործադուլներու հարցին, բացատրեց թէ անոնք պարզապէս պոռթկումներ էին բանուորական դասերու դժգոհութեան: «Համայնավարները կը յարգեն սեփականութիւնը, անոնց պայքարը ուղղուած է դրամատէր չահագործողներուն դէմ: Բանուորները կռուելով այս վերջիններուն դէմ, կ'օգնեն գիւղացիներուն եւ արհեստաւորներուն, ընդարձակելու իրենց սեփականութիւնը: Բանուոր դասակարգը ընդարձակեց պայքարի ճակատը յետադիմութեան դէմ, չնորհիւ հացի համար մղուած պայքարին: Համայնավարներուն, ընկերվարականներուն եւ արհեստակցականներուն միացեալ անկազմակերպները, կաթոլիկ աշխատաւորները, եւ արդէն սկսած է ազգային հաշտութիւնը, զոր կը խորհրդանշեն կարմիր եւ եռագոյն դրօշները, քով քովի պարզուած՝ գործադուլի պահուն: Համաձայնութիւն մը կնքուեցաւ որ կապ ունի 7 միլիոն աշխատաւորներու հետ եւ ընկերային օրէնքները քուէարկուեցան արագօրէն: Կը մնայ ապահովել անոնց գործադրութիւնը»:

Պարզելով կուսակցութեան տեսակէտը՝ ուրիշ հրատապ հարցերու մասին, Պ. Թորէզ բացատրեց թէ իրենք դէմ են ֆրանքին արժեզրկման, թէ ջերմապէս պիտի աջակցին կառավարութեան, պայքարելու համար սպրուստի սղութեան, չահադէտներուն եւ միջնորդներուն դէմ: «Պէտք է որ հարուստները վճարեն: Անոնք ունին 60 միլիառ ֆրանքի հարստութիւն մը, որուն 25 միլիառը արտասահման փոխադրուած է: Պէտք է հրատարակել անունները եւ հանգամանքը անոնց որ ոսկի կը փախցնեն արտասահման: Համայնավարները կ'առաջարկեն յառաջատուական տուրք մը հաստատել ոչ թէ դրամագլուխին, այլ մէկ միլիոնէ վեր հարստութեանց վրայ, սակը հաշուելով 1 — 25 առ հարիւր: Այս տուրքին շնորհիւ պիտի գոյանայ 15 միլիառ ֆրանք»:

Խօսելով լուծեալ կազմակերպութեանց մասին, ընդհ. քարտուղարը յայտարարեց թէ «պէտք է բանտարկել ֆաշականութեան վարիչները»: Ցետոյ ուժգնօրէն ճաղկեց ծայրայեղ ձախերը, որ կ'ուզեն «դրամատիրական կարգուսարքին վրայ յարձակիլ ուղղակի, յեղափոխական ուժով»: Բանուոր դասակարգը պէտք չէ թոյլ տայ որ կանխահաս կռիւի մը մղեն զինք: Պէտք չէ մոռնալ 1848 յունիսի եւ 1871 մարտի դասերը, որոնք մեծ արժէք ունին ոչ միայն բանուոր դասակարգին, այլ հանրապետական ժողովրդապետութեան համար. որովհետեւ կանխահաս կռիւ մը միշտ կը ծառայէ յեղաշրջութեան շահերուն: Պէտք է զգուշանալ աղանդամոլութենէ: Պէտք է աւելի մեծ ուշադրութեամբ յառաջ տանիլ կիներու կազմակերպութիւնը: Այստեղ ալ հարկ է չէզոքացնել աղանդամոլութիւնը, որ արմատացած է մանաւանդ այն կիներուն մէջ որոնք տարիներէ ի վեր միացած են կուսակցութեան:

Պ. Թորէզ յետոյ տեղեկութիւններ հաղորդեց կուսակցութեան անդամներու մասին: Ցունուարին անոնց թիւն էր 80,000, մայիսին՝ 120,000, այժմ՝ 183,000: Երիտասարդական Միութիւնները ունին 63,000 անդամ, որոնք մաս չեն կազմեր կուսակցութեան չարքերուն:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԿՈՉ ՄԸ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ.— Երեսփ. ժողովը ձախակողմեան խմբակցութիւնները կոչ մը ուղղեցին երկրին, զգուշացնելով զանազան զրոյցներու դէմ: Կոչը յոյս կը յայտնէ թէ կառավարութիւնը պիտի յիշեցնէ գործատէրերուն որ յարգեն կնքուած համաձայնութիւնները: Միւս կողմէ կը յայտարարէ որ բանուորները տեղի չտան անհաճոյ դէպքերու, եւ վստահութիւն կը յայտնէ ներքին նախարարին: Այս վերջինը նոր հրահանգներ ուղղեց նահանգապետներուն, բարեկարգութեան պահպանման եւ գործարաններու գրաւման մասին:

15 ՄԱՆՐ ԱՌԵՒՏՐԱԿԱՆՆԵՐ եւ միջնորդներ դատի քաշուեցան, ապրանքներու գիները բարձրացուցած ըլլալով:

ԾԱՆՐ ԴԷՊՔԵՐ պատահեցան Ավինեոնի մէջ (Մարսէյլի ճամբուն վրայ): Առեւտրականները եւ գործարանատէրերը բողոքի թափոր մը կազմած ըլլալով, ոստիկանութիւնը միջամտեց եւ բազմաթիւ մարդիկ վիրաւորուեցան:




Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13)

*բայց չի կրնար կատարուիլ նաեւ անոր դէմ: Անհրաժեշտ է բարեփոխել 16րդ յօդուածը (պատժական տնօրինութիւններ):*

*Այս առթիւ, իտալական կառավարութիւնը կը յիշէ իր բարեկամական յարաբերութիւնները Եուկոսլավիոյ հետ, ինչպէս եւ իր կնքած դաշնագիրները՝ Յունաստանի եւ Թրակիոյ հետ, բայց բան չըսեր Չեխոսլովաքիոյ մասին եւ յայտնի չէ թէ Գերմանիոյ պէ՞ս կը խորհի անոր հանդէպ:*

## Նեղուցներու նոր պայմանագիր

*Բոլոր վիճելի կէտերը հարթուած ըլլալով, Նեղուցներու նոր պայմանագիրը տպուեցաւ եւ երկրորդ ընթերցումով հաստատուեցաւ երէկ, շաբաթ: Ստորագրութեան հանդիսաւոր նիստը պիտի գումարուի երկուշաբթի իրիկուն, որպէսզի Ռումանիոյ արտաքին նախարարն ալ կարենայ ներկայ ըլլալ: Ինչպէս 1923 յուլիս 24ի պայմանագիրը, նոյնպէս այս նոր վաւերագիրը կընքուելէ յետոյ, պիտի պահուի Ֆրանսական կառավարութեան դիւանատան մէջ: Պուլկարիա եւ Ճափոն տակաւին վերապահ են, բայց կը թուի թէ ի վերջոյ պիտի ստորագրեն, ամէն ապահովութիւն ստանալով: Իտալիոյ մէջ սրտնեղութիւն կը տիրէ այս համաձայնութեան առթիւ: Միեւնոյն ատեն թերթերը կը չեշտեն թէ պայմանագիրը արժէք չունի, քանի որ Իտալիա չի մասնակցիր:*

### ՉԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԼԷՕՆ ՊԼՈՒՄ ձայնասփիւռով նոր կոչ մը ուղղեց ժողովուրդին, նոր զանձատումներու սպառման համար: Այս առթիւ ազդարարութիւններ ուղղեց օրինազանցներուն:*

*ՀՐԵՂԷՆ ԽԱԶԻ վարչութիւնը պետական խորհուրդին դիմած էր, խնդրելով յետաձգել Միութեան լուծման հրամանագրին գործադրութիւնը: Պետական Խորհուրդը արտօնեց միայն ընկերային օգնութեան ձեռնարկներու շարունակութիւնը, առժամապէս, որպէսզի ժամանակ ունենան հաշուեյարդար կատարելու:*

*ՄԱՐՍԷՅԼԻ ՎԵՐՋԻՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻՆ համաձայն*, 201,945 *օտարականներ կը գտնուին*, 900,000 *բնակչութեան մէջ, ինչ որ կը նշանակէ մօտաւորապէս մէկ չորրորդ մասը: Առաջին տեղը կը բռնեն Իտալացիները*, 126,430 *հոգի: 1931ին Մարսէյլի օտարականներուն թիւն էր* 199,066, *իսկ բնակիչներու ընդհ. թիւը՝* 800,000:

50,000 *ԼԵՀԵՐ ցոյց մը կատարեցին Վարշաւայի մէջ, պոռալով փողոցէ փողոց.— «Տանցիկը Լեհաստանի կը պատկանի»: Ուրիշ քաղաքներու մէջ ալ բուռն ցոյցեր կատարուեցան Գերմանիոյ դէմ:*

51 *ՀՈԳԻ ՄԵՌԱՆ եւ* 52 *հոգի վիրաւորուեցան չոգեկառքի արկածի մը հետեւանքով, Սիպերիոյ մէջ*: 87*րդ արկածն է այս*, 1936 *յունուարէն ի վեր:*

3700 *ՀՈԳԻ ՄԵՌԱԾ են տաքէն, Մ. Նահանգներուն մէջ, իսկ նիւթական վնասը կը հաշուեն* 600,000,000 *տոլար: Երաշտը գարհուրելի համեմատութիւններ առած է, եւ հունձքերը կը խանձին հրաշէկ արեւի մը տակ:*



## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՄԱՐՍԷՅԼ, Կ. Մ.— Ձեր ուզած հասցէն.*— 53, Rue Corne de Cerf, Lyon.

*ՎԻԷՆՆԱ, Թղթակից.— Անհրաժեշտ է փոքր լուսանկար մը ղրկել:*

*ՊՈՌՏՕ, Ա. Մ.— Նոյնպէս:*

*ՓԱՐԻԶ, Ա. Պ.— Կարելի չէ գործածել եւ ծիծաղելի է:*




**Le Gérant: H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Dameame, PARIS (13)**






*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ԿԵԱՆՔ ու ԱՐՈՒԵՍՏ

*Ամսագրին 6րդ թիւը, պատկերազարդ եւ գրական բովանդակութեամբ: Տպարանական ծանօթ գործադուլը պատճառ դարձաւ որ թերթը սովորականէն ուշ լոյս տեսնէ: Խմբագրութիւնը կը փութայ յայտնել, որ ապահոված է ամսագրին ամսէ ամիս հրատարակութիւնը հակառակ տպագրական նիւթերու գնին բարձրացման, սպասելով որ ընթերցողներն ալ փութան վճարել իրենց բաժնեգինը, տարեկան* **30** *ֆրանք, արտասահման՝* **40** *ֆրանք: Դիմել՝*

*ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ՝* M. & M. BARSAMIAN, 30 Rue Drouot, Pais (9e)

*ՎԱՐՉՈՒԹԵԱՆ՝* V. R. TACVORIAN, 23 Rue Paul Bert, Asnières, (Seine), Chèque Postaux 1647.93 Paris,

